Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 16 ՕԳՈՍՏՈՍ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԲԱՐՈՅԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

Սովետական ժողովուրդը սերտորեն համախմբված Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության շուրջը՝ համաշխարհային պատմական հաջողություններ է ձեռք բերել կոմունիզմի կառուցման գործում։ Այդ հաջողությունների հիմքը հանդիսանում է Կոմունիստական պարտիայի մշակած, գիտականորեն և գործնականորեն ստուգված իմաստուն քաղաքականությունը, որը հիմնված է մարքսիստական-լենինյան թեորիայի և օբյեկտիվ օրենքների իմացության վրա։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ բանվոր դասակարգը մեր երկրի աշխատավոր մասսաների հետ դաշինք կնքած, 1917 թվականի Հոկտեմբերին տապալեց շահագործողների իշխանությունը և հաստատեց նոր հասարակարգ, մեր Հայրենիքը դուրս բերեց մեծ պատմական պրոգրեսի ուղին։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը կառուցեց սոցիալիստական հասարակարգ, ընդմիշտ ոչնչացրեց մարդու շահագործումը մարդու կողմից, վերացրեց սոցիալական և ազգային ճնշումը, ստեղծեց բոլոր պայմաններն ունևոր և կուլտուրական կյանքի համար:

Հենվելով հանրայնացված սոցիալիստական սեփականության վրա, մեր պարտիան հետևողականորեն կիրառեց երկրի ինդուստրացման քաղաքականությունը և կարճ ժամանակամիջոցում հաղթահարելով երկրի դարավոր հետամնացությունը, նրան դարձրեց ինդուստրիալ մեծ տերություն: Երկրի ինդուստրացման հիման վրա պարտիան կարողացավ իրագործել գյուղատնտեսության կոլեկտիվացումը:

Երկրի ինդուստրացման քաղաքականությունը հետևողականորեն կենսագործելու շնորհիվ պարտիայի 14-րդ համագումարից հետո անցած քսանութ տարվա ընթացքում արդյունաբերական արտադրանքի թողարկումն աճել է քսանինն անգամ: Ներկայումս արտադրվում է պողպատ 21 անգամ, ածուխ՝ 19 անգամ, էլեկտրաէներգիա՝ 45 անգամ ավելի, քան 1924—1925 թվականներին: Խոշոր հաջողություններ է ձեռք բերել մեր սոցիա-



լիստական գյուղատնտեսությունը: Մեր երկիրն ապահովված է հացով, տարեցտարի աճում և ամրապնդվում է կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը, ավելանում է գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունը:

ՍՍՌՄ-ի էկոնոմիկայում կատարված արմատական փոփոխություններին համապատասխան փոխվեց ՍՍՌՄ հասարակության դասակարգային կառուցվածքը, վերացվեցին բոլոր շահագործող դասակարգերի մնացորդները, երկրում մնաց բանվոր դասակարգը, գյուղացիների դասակարգը և ինտելիգենցիան, որոնք խստորեն տարբերվում են կապիտալիզմի ժամանակաշրջանի նույն անունն ունեցող սոցիալական խմբերից: Երկրի էկոնոմիկայում և հասարակության դասակարգային կառուցվածքում տեղի ունեցած արմատական փոփոխությունների հիման վրա փոխվեց ՍՍՌՄ բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության և սովետական ինտելիգենցիայի հոգեբանությունն ու գիտակցությունը: Այդ փոփոխությունները հանդեցրին սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնության հաստատմանը:

Սովետական հասարակության մեջ, որտեղ

չկան անտագոնիստական թշնամական դասակարգեր, որտեղ սովետական հասարակություն կազմող բանվորները, գյուղացիները և ինտելիգենցիան ապրում և աշխատում են բարեկամական համագործակցության սկզբունքներով, ստեղծվել է նյութական և հոգևոր շահերի անսասան ընդհանրություն, սովետական մարդկանց գիտակցության, իդեաների, կամքի, քաղաքական ձգտումների և նպատակների ընդհանրություն։ Այդ ընդհանրության հիման վրա էլ հենց ծավալվեցին այնպիսի շարժիչ ուժեր, ինչպիսին են սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը, սովետական ջերմ հայրենասիրությունը։

Իրագործելով սոցիալիզմի կառուցումը և հաստատելով նոր, սովետական հասարակարգ, պարտիան ապահովեց սովետական ժողովրդի միասնության ստեղծումը, սովետական հասարակության բոլոր անդամների շահերի, ձգտումների և նպատակների ընդհանրությունը։

Սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնության ստեղծման էկոնոմիկական հիմքն է կազմում արտադրության սոցիալիստական եղանակը, քաղաքա-



կան հիմքը՝ սովետական հասարակական և պետական կարգը, պարտիայի քաղաքականությունը, իսկ իդեոլոգիական հիմքը՝ մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը։

Սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը սովետական կարգերի մեծագույն նվաճումն է, Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ուժի ու հզորության աղբյուրը, մեր հետագա վերելքի, կոմունիզմի հաղթանակի կարևորագույն գրավականներից մեկը։

Մեր հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, նրա խորը բովանդակությունը, հնարավորություններն ու առավելությունները դրսևորվում են ամենաբազմազան ձևով։

Սովետական մարդկանց շահերի, հայացքների, նպատակների խորը միասնությունը, նրանց համախմբվածությունը Սովետական իշխանության և Կոմունիստական պարտիայի շուրջը, հանդիսանում է սովետական սոցիալիստական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը։

Սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունն ամենից առաջ հանդես է գալիս Կոմունիստական պարտիայի շուրջը սովետական ժողովրդի համա-

խմբվածության մեջ։ Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը սովետական ժողովրդի իղձերի և ձգտումների քաղաքականությունն է։ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության որոշումները և միջոցառումները մեր ժողովուրդը համարում է իր սեփական, հարազատ գործը և ստեղծագործական ուժերով լի պայքարում է այդ որոշումների ու միջոցառումների կենսագործման համար։

Կոմունիստական պարտիայի, Սովետական կառավարության և ՍՍՌՄ ժողովուրդների համախմբվածության և միասնության վառ ցույց էր ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջերս տեղի ունեցած հինգերորդ սեսիան, որտեղ մեր երկրի ժողովուրդները միահամուռ հավանություն տվին և ջերմորեն պաշտպանեցին Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը։

Սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունն իր արտահայտությունն է գտնում նաև աշխատավորական մասսաների քաղաքական և աշխատանքային ստեղծագործական ակտիվության մեջ։ Մեր երկրում յուրաքանչյուր սովետական քաղաքացի գիտակցում է, որ ինքը աշխատում է իր համար, սովետական հասարակության,



իր հարազատ պետության ամրապնդման համար։

ՍՍՌՄ ժողովուրդների բարոյա-քաղաքական միասնությունը հսկայական դեր կատարեց Հայրենական Մեծ պատերազմում գերմանական ֆաշիզմի և իմպերիալիստական Յապոնիայի դեմ մեր հաղթանակն ապահովելու գործում, և դիմացավ պատերազմի բոլոր դժվարություններին ու փորձություններին։

Մեր հասարակարգի բարոյա-քաղաքական միասնությունը վառ կերպով արտահայտվում է սովետական մարդկանց բարձր հայրենասիրությամբ։

Սոցիալիստական հայրենասիրությունը սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ եղբայրության զգացմունքն է, դա նրանց ընդհանուր հոգատարությունն է ՍՍՌՄ բարօրության մասին, սովետական յուրաքանչյուր ժողովրդի պարտականությունն է՝ պաշտպանել սովետական մյուս ժողովուրդների շահերը, որպես իր հարազատ շահերի։

Դեռևս երբեք մեր Հայրենիքը չի եղել այնքան մեծ ու հզոր, կենսական ուժերով ու ստեղծագործական եռանդով լի, ինչպես ներկայումս։ Նա ուժեղ է սովետական հասարա-

կության բարոյա-քաղաքական միասնությամբ, ժողովուրդների անխախտ բարեկամությամբ, սովետական մարդկանց վառ հայրենասիրությամբ, կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության շուրջը նրանց համախմբվածությամբ։

Մասսաներին զինելով հասարակության զարգացման օրենքների իմացությամբ, Կոմունիստական պարտիան իր քաղաքականության մեջ մարմնավորում է այդ միասնությունը։

Սոցիալիզմի հաղթանակի հետևանքով պատմության մեջ առաջին անգամ ստեղծվել է այնպիսի հասարակություն և պետություն, որոնք չեն ճնշում աշխատավոր մասսաների նախաձեռնությունն ու ստեղծագործությունը, այլ, ընդհակառակը, առավելագույն չափով խրախուսում և աջակցում են այդ նախաձեռնությունը ծավալելուն, պայքար մղելով ամեն տեսակ լճացման, անշարժության և հնամոլության դեմ, ամեն կերպ պաշտպանում են նորարարների, ռացիոնալիզատորների նախաձեռնությունը, այն ամենը, ինչ առավել պրոգրեսիվ է, կատարյալ ու առաջավոր։ Մարդկային հանճարի բոլոր ստեղծագործությունները ծառայում են ամբողջ ժողովրդին, օգտագործվում են ոչ թե մի



բուռ շահագործողների կողմից, այլ ժողովրդի կողմից՝ ամբողջ հասարակության նյութական բարեկեցության բարձրացման համար։ Այդ նախաձեռնության կազմակերպողը, ուղղություն տվողը և ծավալողը Կոմունիստական պարտիան է։

Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը կառուցված է սոցիալիստական հասարակության զարգացման օրինաչափությունների խորը ըմբռնման վրա։ Նա հիմնըված է հասարակության զարգացման տվյալ պատմական աստիճանի օբյեկտիվ պայմանների հաշվառման վրա, բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության եղբայրական ամրակուռ դաշինքի վրա։

Սովետական ժողովրդի միասնությունը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կոմունիզմի կառուցման հոյակապ պլանները ժամկետից շուտ կատարելու նրա պատրաստակամությունը՝ պարտիայի և ժողովրդի անխախտ միասնության վառ արտահայտությունն է, Կոմունիստական պարտիայի փորձված ղեկավարության նկատմամբ ժողովրդի անհողդողդ հավատի արտահայտությունը։

Այդ վստահությունը պարտիան ձեռք է բերել մասսաների մեջ կատարած բազմամ-

*յա աշխատանքով, իր ճիշտ քաղաքականությամբ և մասսաներին նրանց սեփական փորձի հիման վրա իր քաղաքականության ճշտությունը համոզելու հմտությամբ, իր համար բանվոր դասակարգի աջակցությունը նվաճելու և մասսաներին իր հետևից տանելու հմտությամբ։*

*Մեր երկրի ժողովուրդների ազատության ու երջանկության, մեր Հայրենիքի անկախության և ծաղկման, կոմունիստական հասարակարգի կառուցման համար իր մղած պայքարի բոլոր էտապներում Կոմունիստական պարտիան հաջողություններ է ձեռք բերել և ձեռք է բերում նրա համար, որ նա միշտ հենվում է միլիոնավոր աշխատավորների ստեղծագործական ակտիվության վրա, անդուլ կերպով ամրապնդում է կապերը մասսաների հետ, ուշադիր կերպով ունկնդրում է մասսաների ձայնին։*

*Իր Հայրենիքի նկատմամբ անսահման սիրո և հպարտության զգացմունքով լցված, Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ պայքարում է պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումների կենսագործման համար։*

*Սովետական ժողովուրդը խորապես գիտակցելով պարտիայի քաղաքականության*



*էությունը, 19-րդ համագումարի պատմական որոշումների վեհությունը կոմունիստական հասարակության կառուցման գործում՝ անձնվիրաբար պայքարում է հինգերորդ հնգամյա պլանը ժամկետից շուտ և բարձր որակով կատարելու համար։ Հենց դրանում էլ արտահայտվում է սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, Կոմունիստական պարտիայի և ժողովրդի սերտ միասնությունը։*

*Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի մեջ տեսնում է մեր դարաշրջանի միտքը, պատիվը և խիղճը, մարտերում կոփված և փորձված իր ավանգարդին, սոցիալիզմի երկրի փառապանծ հաղթանակների կազմակերպչին ու ոգեշնչողին։*

*Սովետական ժողովուրդը զոդված բարոյա-քաղաքական անխորտակելի միասնությամբ, ոգեշնչված սոցիալիստական հայրենիքին նվիրվածության սրբազան զգացմունքներով, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ վստահորեն ընթանում է դեպի կոմունիզմ։*

*Մ. ՔՈՉԱՐՅԱՆ*

---

## ՏԱՆԿԻՍՏՆԵՐԻ ՕՐԸ

Սեպտեմբերի 13-ին սովետական ժողովուրդը և նրա Զինված Ուժերը կնշեն Տանկիստների օրը։

Այդ տոնը սահմանվել է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով 1946 թվականին ի նշանավորումն տանկային ու մեքենայացված զորքերի հատուկ, կարևոր նշանակության և Հայրենական Մեծ պատերազմում նրանց մատուցած խոշորագույն ծառայությունների, ի նշանավորումն մեր զինված ուժերը զրահատանկային տեխնիկայով հագեցնելու ասպարեզում տանկաշինարարների մատուցած ծառայության։

Այս տարի մեր ժողովուրդը Տանկիստների օրը տոնում է նոր, հզոր վերելքի իրադրության մեջ։ Սովետական ժողովուրդը խորին գոհունակությամբ և միահամուռ հավանությամբ դիմավորեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայի պատմական որոշումները, որոնք ուղղված են երկրի սոցիալիստական ժողովրդական տնտեսության հետագա զարգացմանը, աշխատավորների



նյութական և կուլտուրական կյանքի մակարդակի բարձրացմանը։

Սովետական Միության աշխատավորների խանդավառությամբ լի ստեղծարար աշխատանքը պաշտպանում են մեր Զինված Ուժերը, որոնք կանգնած են խաղաղության և ՍՍՌՄ պետական շահերի պաշտպանության դիրքերում։

***

Տանկային զենքի պատմությունը սկսվում է 1915 թվականից, երբ մի խումբ տաղանդավոր ռուս ինժեներներ Ռիգայում փորձարկում էին աշխարհում առաջին արագընթաց տանկի փորձնական նմուշը։

Այդ տանկը, որ կոչվում էր «ամենագնաց», ցույց տվեց մարտական բարձր հատկություններ։ Նա հեշտությամբ հաղթահարում էր զանազան խոչընդոտներ, այդ թվում՝ խոր փոսերը։ Ռուսական առաջին տանկի արագությունը մեկ ժամում հասնում էր 25 կիլոմետրի, որը 3—4 անգամ գերազանցում էր անգլիական և ֆրանսիական տանկերի արագությանը, որոնք մարտադաշտում երևացին միայն 1916 թվականին։

Թեպետ և տանկի գաղափարը և նրա առաջին նմուշը երևան է եկել մեր երկրում, տանկերի արտադրությունը չծավալվեց Ռու-

սաստանում։ Ցարիզմը խեղդում էր ժողովրդի ստեղծագործական ուժերը, արհամարհական վերաբերմունք էր ցույց տալիս ռուսական բնածին տաղանդների գյուտերին։ Ստրկամտորեն խոնարհվելով արտասահմանի առաջ, նախառևոլյուցիոն Ռուսաստանի չինովնիկական ապարատը ամեն կերպ արհամարհում էր ռուսական գյուտերը, ուստի և առաջին ռուսական տանկի գյուտն էլ թաղվեց ցարական ռազմական տեսչության արխիվներում։

Մանր տանկի ամենաառաջին նախագիծը նույնպես ստեղծվել է մեր երկրում։ Այն դեռ 1911 թվականին կազմել է ականավոր ինժեներ Վ. Դ. Մենդելեևը (ռուս հանճարեղ գիտնական-քիմիկոս Դ. Ի. Մենդելեևի որդին)։

Այս ամենը խոսում է այն մասին, որ աշխարհում առաջին տանկի ստեղծման պրիորիտետը (առաջնությունը) պատկանում է ռուս ժողովրդին։ Բայց տանկային արդյունաբերության զարգացմանը խանգարել է ցարական Ռուսաստանի հետամնացությունը և նրա չինովնիկական ապարատի անտարբերությունը։

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան անսահմանափակ հնարավորություններ ստեղծեց սովետական մարդկանց



ստեղծագործության ծավալման համար՝ գիտության և տեխնիկայի բոլոր բնագավառներում, այդ թվում և ռազմական տեխնիկայի բնագավառում։

Պարտիան և կառավարությունը հսկայական նշանակություն էին տալիս զրահատանկային և մեքենայացված զորքերի ստեղծմանը։ Դեռ քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի տարիներին Կարմիր Բանակի կազմում ծնունդ առան առաջին զրահազորամասերը, որոնց մարտիկները Կարմիր Բանակի բոլոր ռազմիկների հետ միասին հերոսաբար կռվում էին թշնամու դեմ։

Կատաղի մարտերում պաշտպանելով աշխարհում առաջին սոցիալիստական պետության անկախությունն ու գոյությունը, սովետական ժողովուրդը մարտերում կոփված Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ եղավ խաղաղ ստեղծաբար աշխատանքի։ Հնգամյակների տարիներին ստեղծվեց հզոր արտադրական-տեխնիկական բազա, որը մեր երկիրը հետամնաց ագրարային երկրից դարձրեց ինդուստրիալ առաջավոր երկիր։

Ստեղծվեց ժամանակակից մեքենաշինական արդյունաբերություն, որը սարքավոր-

ված է նորագույն տեխնիկայով և ընդունակ՝ արտադրելու ամեն տեսակ մեքենաներ, այդ թվում և առաջնակարգ տանկեր ու զրահաավտոմեքենաներ։

Շնորհիվ այն մշտական հոգատարության և ուշադրության, որ հանդես են բերում Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը պաշտպանական արդյունաբերության զարգացման գործում, մեր Զինված Ուժերը տարեցտարի ստանում են ավելի շատ մարտական տեխնիկա։ 1930 թվականից մինչև 1939 թվականն ընկած ժամանակաշրջանում տանկերի քանակը մեր բանակում աճել է 43 անգամ։

Հայրենական Մեծ պատերազմը ցույց տվեց, որ մեր «Տ—34» և «ԿՎ» տանկերը, որոնց կոնստրուկցիաները կազմվել են 1939—1940 թվականին, աշխարհիս լավագույն տանկերն են։ Պատերազմի ընթացքում մեր կոնստրուկտորները ստեղծեցին մարտական նոր մեքենա՝ «ԻՍ» ծանր տանկը։

Ներկայումս սովետական կոնստրուկտորական միտքը աշխատում է տանկային հին սիստեմները անընդհատ կատարելագործելու և նոր սիստեմներ ստեղծելու ուղղությամբ։

Հայրենական Մեծ պատերազմը մեր զրա-



հատանկային զորքերի մարտական հատկությունների լուրջ ստուգում հանդիսացավ։

Հանկարծակի, ուխտադրուժ հարձակման շնորհիվ գերմանա-ֆաշիստական բանակը ժամանակավոր առավելություններ ձեռք բերեց։ Չնայած այն բանին, որ պատերազմի առաջին էտապում հիտլերյան զորքերը ըղձալի թվական գերազանցություն ունեին տանկերի ասպարեզում, մեր տանկիստները զորքերի մյուս տեսակների հետ սերտ փոխգործողությամբ ծանր կորուստներ էին հասցնում թշնամուն։

Սովետական տանկային արդյունաբերության աշխատողները պատերազմի ծանր պայմաններում ապահովում էին ավելի մեծ թվով տանկերի, ինքնագնաց հրետանային սարքերի, զրահաավտոմեքենաների թողարկումը և հասան այն բանին, որ պատերազմի վերջին երեք տարում տարեկան թողարկում էին ավելի քան 30 հազար մարտական մեքենա։

Սովետական տանկիստները խոշոր դեր կատարեցին Մոսկվայի տակ մղված ճակատամարտում։ Այստեղ առանձնապես աչքի ընկավ առաջին գվարդիական տանկային բրիգադան, որը ութ օրում ոչնչացրեց թշնամու 133 տանկ։

Ստալինգրադի ճակատամարտում մեր

տանկիստները ուժեղացնում էին հետևակի պաշտպանությունը, հզոր հակահարվածներ հասցնում հարձակվող թշնամուն, իսկ հետո հակահարձակման անցնելով՝ ավարտեցին թշնամու պաշտպանության ճեղքումը թևերից և կարճ ժամանակամիջոցում փակեցին շրջապատման հսկայական օղակը, որի մեջ ընկավ հակառակորդի 330 հազարանոց խմբավորումը, 22 դիվիզիա։

1943 թվականի ամռանը Կուրսկի տակ ծավալվեց պատերազմների պատմության մեջ մի ամենամեծ տանկային ճակատամարտ, որին երկու կողմերից մասնակցում էին ավելի քան տաս հազար տանկ։

Կուրսկի ճակատամարտում սովետական տանկիստները, զորքերի մյուս տեսակների հետ սերտ փոխգործողությամբ, ետ մղեցին հակառակորդի գրոհը և ոչնչացրին ֆաշիստական 4.600 տանկ ու ինքնագնաց հրանոթ։ «Եթե Ստալինգրադի մոտ մղված ճակատամարտը նախագուշակում էր գերմանա-ֆաշիստական բանակի մայրամուտը, ապա Կուրսկի մոտ մղված ճակատամարտը նրան կանգնեցրեց կատաստրոֆի առաջ», ասաց այդ օրերին Ի. Վ. Ստալինը։

Կուրսկի տակ մղված ճակատամարտում առանձնապես վառ կերպով երևաց սովետա-



կան տեխնիկայի գերազանցությունը։ Գերմանական նորագույն՝ «Վագր» ու «Հովազ» տանկերը և «Ֆերդինանդ» ինքնագնաց հրանոթները չդիմացան սովետական «Տ—34» ու «ԿՎ» տանկերի հարվածներին։

Տանկային և մեքենայացված միավորումները հանդիսացան այն վճռական ուժը, որը ապահովեց մեր զորքերի հարվածների զարգացումը՝ հետագա հարձակման ընթացքում։

Կորսուն-Շևչենկոյի շրջանում, բելոռուսական օպերացիայի ժամանակ, Յասսի-Քիշնևի շրջանում, Արևելյան Պրուսիայում մեր հրամանատարությունը տանկերը վարպետորեն օգտագործում էր մանևրելու և հակառակորդին շրջապատելու ու ջախջախելու համար։

Բեռլինյան խոշորագույն օպերացիայի ժամանակ սովետական զորքերը թշնամուն հասցրեցին իրենց հզորությամբ չտեսնված հարված։ Բեռլինի ճակատամարտին մասնակցում էին սովետական 6.300 տանկ և ինքնագնաց հրանոթ։

Գերմանական ֆաշիզմի կողմից մեր վզին փաթաթված ծանր պատերազմը վերջացավ Սովետական Միության հոյակապ հաղթանակով, որի ուսերին էր ընկած գերմանական

արյունարբու ֆաշիզմի դեմ մղած պայքարի ամբողջ ծանրությունը։

Մեր տանկիստները մեծ դեր խաղացին Արևելքում յապոնական իմպերիալիզմի ջախջախման գործում։ Սովետական զորքերը գլխովին ջախջախեցին Կվանտունյան բանակը և յապոնական լծից ազատեցին Մանջուրիան ու Կորեան։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը բարձր են գնահատել տանկիստների հերոսությունն ու մարտական սխրագործությունները և տանկաշինարարների անձնվեր աշխատանքը Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։ 250 հազար տանկիստներ պարգևատրվել են շքանշաններով և մեդալներով, 1.120 տանկիստներ արժանացել են Սովետական Միության Հերոսի բարձր կոչմանը, իսկ նրանցից 16-ն այդ կոչմանն արժանացել են կրկնակի անգամ, տանկային արդյունաբերության ավելի քան 9.000 կոնստրուկտորներ, ինժեներներ, բանվորներ և բանվորուհիներ պարգևատրըվել են շքանշաններով և մեդալներով, իսկ շատ ղեկավարների և կոնստրուկտորների շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։

Պատերազմը ավարտելուց հետո սովետա-



կան ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հաջողությամբ բուժեց պատերազմի կողմից մեր ժողովրդական տնտեսությանը հասցված ծանր վերքերը և մեծ չափերով գերազանցեց արտադրության նախապատերազմյան մակարդակը։

Պարտիայի 19-րդ համագումարը նշեց մեր արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա աճման, սովետական մարդկանց նյութական և կուլտուրական բարեկեցության բարձրացման, մեր Հայրենիքի պաշտպանական հզորության ամրապնդման խնդիրը։

Սովետական ժողովուրդը և նրա Զինված Ուժերը իրենց փառապանծ տանկիստների համար ունեցած օրինական հպարտության զգացմունքով կտոնեն Տանկիստների օրը։ Մեր տանկիստները այդ օրը կդիմավորեն ուսման և կարգապահության, իրենց մարտական պատրաստության բարձրացման գործում ձեռք բերած նոր հաջողություններով։ Մարտական տեխնիկայի տիրապետման մեջ իրենց նվաճումներով նրանք ցուցադրում են իրենց անսահման նվիրվածությունը սիրելի Հայրենիքին, մեծ սովետական ժողովրդին, մեր փառապանծ Կոմունիստական պարտիային։

Կ. ԳՈԼՈՎԻՆ

---

# ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՏԱԳԱ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

*Կենսագործելով հանրային անասնաբուծության զարգացման մասին պարտիայի և կառավարության որոշումները, Շահումյանի շրջանի կոլտնտեսությունները պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ վերջին մի քանի տարում նշանակալից հաջողություններ են ձեռք բերել անասունների գլխաքանակի աճման և նրանց մթերատվության բարձրացման ուղղությամբ։*

*Որպեսզի հնարավոր լիներ վերացնել անասնաբուծության ետ մնալը և այն դարձնել կոլտնտեսությունների համար բարձր եկամտաբեր ճյուղ, կոլտնտեսությունները խոշոր աշխատանք կատարեցին անասնակերի կայուն բազա ստեղծելու ասպարեզում։ Ընդարձակվեցին բազմամյա և միամյա խոտաբույսերի, ինչպես նաև արմատապտուղների և սիլոսային կերերի ցանքատարածությունները։ Դրա շնորհիվ կոլտնտեսություններում վերացվեց այն վատ պրակտի-*



*կան, երբ անասուններին կերակրում էին միայն խոտով և դարմանով, իսկ հյութալի և խտացրած կերերի վրա լուրջ ուշադրություն չէր դարձվում։ Դրանից հետո շրջանի կոլտնտեսություններում սկսեցին կուտակել խտացրած կեր և պատրաստել այնքան սիլոս, որ մսուրային շրջանում լիուլի բավարարում է անասուններին։ Այսպիսով անասունների կերաբաժինը դարձավ բազմատեսակ, որը մեծ չափով օգնեց կովերի մթերատվության բարձրացմանը։*

*1950 թվականից սկսած յուրաքանչյուր տարի կոլտնտեսությունները կուտակում են ավելի շատ անասնակեր, քան նախատեսված է պլանով։ Այնուհետև շրջանի կոլտնտեսությունները խոշոր աշխատանք կատարեցին անասնաշենքերի կառուցման ու վերանորոգման ուղղությամբ։ Կառուցվել և շահագործման են հանձնվել լուսավոր, բարձր, արևոտ և սալահատակված կուլտուրական անասնաշենքեր, իրենց բոլոր հարմարություններով։ Ներկայումս շրջանի կովաբուծական, խոզաբուծական, և ոչխարաբուծական ֆերմաները լիովին ապահովված են նոր շենքերով։*

*Առանձնակի ուշադրություն է դարձվել ֆերմաներում անասնապահական աշխա-*

տանքները մեքենայացնելու վրա։ Այժմ շըր-ջանի կոլտնտեսությունների կովաբուծական 15 ֆերմաներից տասներկուսում մտցված է կովերի էլեկտրակիթ, կերերի մշակման, կերերի ու գոմաղբի փոխադրման աշխատանքները մեխանիզացիայի է ենթարկված։ Այդ ֆերմաներում անասուններին ջրելու մեքենայական սիստեմ է անցկացված։ Ֆերմաներում հաստատուն կարգ է ստեղծվել անասունների կերակրման ու խնամքի գործում։

Կոլտնտեսություններում ստեղծելով անասնակերի կայուն բազա, արմատավորելով անասնաբուծության բնագավառում եղած առաջավոր փորձը, գիտության նվաճումները, ինչպես նաև բարելավելով անասնապահ կոլտնտեսական կադրերի պատրաստման, ընտրության և տեղաբաշխման գործը, շըրջանում անասնաբուծության զարգացումը շեշտակի վերելք ապրեց, մի քանի անգամ ավելացավ անասունների գլխաքանակը և նրանց մթերատվությունը։ Այսպես, օրինակ, 1949 թվականի համեմատությամբ, 1953 թվականին, շրջանի կոլտնտեսություններում կովերի գլխաքանակն ավելացել է երկու անգամ, մանր եղջերավորներինը՝ 1,5 անգամ, խոզերինը՝ 3 անգամ, թռչուններինը՝ մոտ եր-



կու անգամ և այլն։ Կոլտնտեսություններում մինիմումի է հասցվել անասունների և հատկապես մատղաշների անկումը։

Հետևյալ դիագրաման ցույց է տալիս, թե ինչպես կոլտնտեսություններում տարեցտարի բարձրացել է անասունների կաթնատվությունը։



Եթե 1949 թվականին շրջանում մեկ ֆուրաժային կովից ստացվել է 608 լիտր կաթ, ապա 1952 թվականին այն հասել է 2.118 լիտրի, կաթնատվության աճը կազմում է մոտ 350 տոկոս։

1953 թվականի առաջին կիսամյակում անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացվել է 32 լիտր ավել կաթ։ Զգալի չափով վերացվել է կովերի ստերջությունը։ Եթե կովերի ստերջությունը 1949 թվականին կազմում էր 35 տոկոս, ապա 1952 թվականին այն կազմեց միայն 4 տոկոս։ Մեկ մայր խոզից 1949 թվականին ստացվել էր վեց խոճկոր, իսկ 1952 թվականին 15 խոճկոր։ Մեկ հավից 1949 թվականին ստացվել էր 18 ձու, 1952 թվականին՝ 85 ձու։ Կրկնապատկվել է ոչխարների բրդատվությունը։

Անասունների մթերատվության նման աճը բարձրացրեց նաև անասնաբուծությունից ստացվող դրամական եկամուտները։ Այսպես օրինակ, 1949 թվականին շրջանի կոլտնտեսությունները անասնաբուծությունից ստացել են մեկ միլիոն 837 հազար 908 ռուբլի եկամուտ, իսկ 1952 թվականին՝ վեց միլիոն 730 հազար 841 ռուբլի։



Անասնաբուծությունից ստացված եկամուտը ըստ տարիների հետևյալ պատկերն ունի.




1953 թվականի առաջին կիսամյակում անասնաբուծությունից ստացված դրամական եկամուտները անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ աճել են 15

տոկոսով։ Անասնաբուծության վիճակի այդպիսի լուրջ փոփոխությունը բարձրացրեց կոլտնտեսականների շահագրգռվածությունը։ Բազմաթիվ կոլտնտեսականներ որպես լրացուցիչ վարձատրություն ստացան մեծ քանակությամբ անասնապահական մթերքներ և անասուններ։ 1951 և 1952 թվականներին անասնաբուծության բնագավառում աշխատող կոլտնտեսություններից 205 հոգի ստացել են լրացուցիչ վարձատրություն։ Նրանք միայն կաթ ստացել են 67 տոննա։

Որպեսզի էլ ավելի պարզ ու համոզեցուցիչ լինեն Շահումյանի շրջանի անասնաբուծության բնագավառի աշխատողների ձեռք բերած նվաճումները, անհրաժեշտ է ցուցադրել կոլտնտեսություններից միայն մեկի աշխատանքի որոշ արդյունքները։ Ն. Շենգավիթ գյուղի Կալինինի անվան կոլտնտեսությունում տարիներ անընդհատ անասնաբուծությունը համարվում էր որպես անօգտակար, նույնիսկ վնասակար ճյուղ։ Սակայն այդ կոլտնտեսության առաջավոր անասնապահները սեփական փորձով ապացուցեցին անասնաբուծության օգտակարությունը և նրա կարևորությունը ժողովրդական տնտեսության համար։ Կովերի կաթնատվության ավելացումը Կալինինի անվան կոլտնտեսությունում ունի հետևյալ պատկերը։






Այսպիսով, 1952 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը ավելացել է յոթ անգամ։ Կոլտնտեսությունում մեկ մայր խոզից 1949 թվականին ստացվել է հինգ խոճկոր, իսկ 1952 թվականին՝ 20 խոճկոր։

Մեկ հավից 1949 թվականին ստացվել է 31 ձու, իսկ 1952 թվականին 120 ձու։ Նռակի չափով ավելացել է ոչխարների բրդատվությունը։

Անասնաբուծությունից ստացված մթերքների աճի հետևանքով բարձրացել են նաև դրամական եկամուտները։ Եթե 1949 թվականին կոլտնտեսությունը անասնաբուծությունից ստացել է՝ ընդամենը 62 հազար 308 ռուբլի, ապա 1952 թվականին՝ 566 հազար 552 ռուբլի եկամուտ։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում ընկեր Մալենկովը բազմակողմանիորեն վերլուծելով գյուղատնտեսության զարգացման հարցերը, պահանջեց, որպեսզի մոտակա երկու—երեք տարում հասնենք մեր երկրում բնակչության համար պարենամթերքի և թեթև արդյունաբերության համար հումքի առատության։

Շահումյանի շրջանի կոլտնտեսականները երբեք չեն հանգստանա ձեռք բերած հաջողություններով, կանեն ամեն ինչ պարտիայի և կառավարության որոշումները անասնաբուծության զարգացման ուղղությամբ մինչև վերջ կենսագործելու համար։

Դ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ՀԿՊ Շահումյանի շրջկոմի քարտուղար

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԱԳԻՏԱՏՈՐ Ս. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԻ ԶՐՈՒՅՑԸ ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ԽՍՏԱԳՈՒՅՆ ՌԵԺԻՄ ԿԻՐԱՌԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի 18-րդ պարտհամագումարի անվան մանվածքային ֆաբրիկայի մանող ցեխի ագիտատոր Ս. Համբարձումյանը աշխատավորների շրջանում կատարվող ագիտացիոն աշխատանքի լավ տնելի փորձ ունի։

Օգտագործելով քաղաքական ագիտացիայի բազմազան ձևերը, նա հասել է նշանակալից հաջողությունների։ Ցեխը դարձել է առաջավոր, բանվոր-բանվորուհիների մեծամասնությունը կատարում և գերակատարում են ստանձնած պարտավորությունները։ Ցեխում օրինակելի աշխատանք է կատարվում խնայողության խստագույն ռեժիմ կիրառելու ուղղությամբ։ Այդ կապակցությամբ ընկ. Համբարձումյանը վերջերս հետաքրքիր զրույց կազմակերպեց «Կիրառենք խնայողության խստագույն ռեժիմ» թեմայով։

Մինչև զրույցի սկսելը, նա աչքի ընկնող տեղում ամրացրել էր համապատասխան դիագրամներ, ցուցատախտակներ, ֆաբրիկայի 7 ամսվա աշխատանքի արդյունքներն ամփոփող ցուցադրական նյութեր։ Սկսելով ագիտացիոն զրույցը, ագիտատորը խոսեց ցեխի այդ օրվա աշխատանքի արդյունքների մասին, նշեց առաջավոր բրիգադաների, բանվորների ու բանվորուհիների անունները և սկսեց հերթական զրույցը, որը նվիրված էր արդյունաբերության մեջ խնայողության ռեժիմի կիրառման հարցերին։

— Պարտիայի 19-րդ համագումարը,— ասում է ագիտատորը,— դիրեկտիվ տվեց հինգերորդ հնգամյակում թեթև և սննդի արդյունաբերության արտադրանքի արտադրությունն ավելացնել առնվազն 70 տոկոսով։ Հնգամյակի դիրեկտիվներում վառ կերպով արտահայտված է ժողովրդի նյութական կյանքի մակարդակի բարձրացման վերաբերյալ պարտիայի ու կառավարության անսահման հոգատարությունը, որովհետև մեր երկրում արտադրության զարգացման նպատակն այն է, որ հասարակության նյութական և կուլտուրական մշտապես աճող պահանջմունքները առավելագույն չափով բավարարվեն։



Անդուլ հոգատարությունը սովետական մարդկանց աճող պահանջմունքների առավելագույն բավարարման նկատմամբ, սովետական մարդու բարօրությունը, սովետական ժողովրդի բարգավաճումը Կոմունիստական պարտիայի համար բարձրագույն օրենք է դարձել, շարունակում է ագիտատորը։

— ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում,— ասում է ագիտատորը,— ընկեր Մալենկովը նշեց, որ ելնելով ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի ավելի արագ բարձրացումն ապահովելու շահերից, պարտավոր ենք ամեն կերպ արագացնել թեթև արդյունաբերության զարգացումը։

Նա խնդիր դրեց շեշտակի շրջադարձ կատարել ժողովրդական սպառման առարկաների արտադրության գործում, ապահովել թեթև և սննդի արդյունաբերության առավել արագ զարգացումը, որպեսզի ավելի շուտ կատարենք հնգամյա պլանի այդ առաջադրանքը։ Դրանում շատ բան ունենք կատարելու մենք՝ տեքստիլ արդյունաբերության աշխատողներս։ Յուրաքանչյուր ձեռնարկության, յուրաքանչյուր արտադրող բանվորի պարտքն է՝ թողարկել բարձրորակ արտադրանք, շարունակ հոգ տանել թողարկ-

վող ապրանքների լավորակության և արտաքին ձևավորման մասին: Մեր առջև դրված տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրները հաջողությամբ կատարելու և այն ֆինանսական միջոցներով ապահովելու համար, անհրաժեշտ է սիստեմատիկաբար բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իջեցնել թողարկվող արտադրանքի ինքնարժեքը և արտադրության բոլոր ճյուղերում կիրառել խնայողության խստագույն ռեժիմ: Խնայողության ռեժիմը, որպես տնտեսավարման սոցիալիստական մեթոդ, միշտ էլ խոշոր դեր է խաղացել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման գործում: Եվ պատահական չէ, որ պարտիան միշտ էլ առանձնահատուկ ուշադրություն է դարձնում խնայողության ռեժիմի կիրառման հարցերին, պետական միջոցների տնտեսաբար ծախսմանը: Խնայողության խստագույն ռեժիմի կիրառումը ավելի մեծ նշանակություն է ստանում այժմ, երբ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը իրականացնում են նոր միջոցառումներ, սիստեմատիկորեն իջեցնում են մասսայական սպառման ապրանքների գները, հոգ են տանում սովետական մարդկանց ուրախ ու երջանիկ կյանքի համար:



Նախատեսված է 1953 թվականին արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքն իջեցնել 6,1 տոկոսով: Պարտիայի և կառավարության այդ կարևոր առաջադրանքի կատարման գործում վճռական գործոն է նաև խնայողության ռեժիմի կիրառումը: Այդ նշանակում է, որ յուրաքանչյուր ֆաբրիկայի, գործարանի կոլեկտիվ իր ավանդը պետք է դնի ժողովրդական տնտեսության զարգացման այդ կարևոր բնագավառում:

Թե որքան մեծ են խնայողության ռեժիմի կիրառման արդյունքները, երևում է թեկուզ հենց մեր ֆաբրիկայի օրինակից:

Ապահովելով պետական առաջադրանքների կատարումը, ֆաբրիկայի կոլեկտիվը տնտեսական տարվա անցած 7 ամսում պլանից դուրս տվել է 244 տոննա մանվածք: Գերակատարված է սարքավորումների արտադրողականության պլանը, նախատեսվածի դիմաց զգալիորեն բարձրացվել է աշխատանքի արտադրողականությունը, իջեցվել է թողարկվող արտադրանքի ինքնարժեքը:

Այս հաջողությունները արդյունք են նաև հումքի, օժանդակ նյութերի խնայողաբար ծախսման, աշխատանքի նկատմամբ աճեցած սոցիալիստական վերաբերմունքի:

Իր այդ միտքն ունկնդիրներին ավելի պարզ ու մատչելի դարձնելու նպատակով ագիտատորը հաշվումներ կատարեց, թե Հայրենիքը ի՞նչ է ստանում միայն մեր խնայումներից։ Ինչպես տեսնում եք այս տախտակի վրա (նա մատնացույց է անում սկզբում այստեղ իր բերած ցուցատախտակը), 7 ամսում ֆաբրիկայի կոլեկտիվը տնտեսել է 58 տոննա բամբակ, 132 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, 115 հազար ռուբլու արժողությամբ օժանդակ նյութեր, իսկ ընդհանուր ցեխային ծախսերից՝ 34 հազար ռուբլի։

Ապա դիմելով ունկնդիրներին ագիտատոր ընկ. Համբարձումյանն հարցնում է.

— Ձեզանից ո՞վ կարող է ասել, թե մեկ տոննա բամբակից քանի կիլոգրամ թել կստացվի։

— 900-ից մինչև 930 կիլոգրամ,— պատասխանում է ենթավարպետ, գերազանց որակի բրիգադայի բրիգադիր Մարգո Թումանյանը։

— Այո, ընկերներ,— շարունակում է ագիտատորը։ Լավ աշխատանքի դեպքում ավելի քան 930 կիլոգրամ թել։ Բայց դուք գիտե՞ք, թե քանի մետր գործվածք է ստացվում յուրաքանչյուր կիլոգրամ թելից.— Մոտ 7 մետր,— ասում է նա։ Ապա հաշ-



վենք, թե մեր խնայած բամբակից արտապլանային կարգով քանի մետր գործվածք կստանա երկիրը։

Ունկնդիրների առաջ, գրատախտակի վրա, հասարակ թվաբանական հաշվումներով, բոլորի համար պարզ և հասկանալի նա ցույց է տալիս, որ իրենց ֆաբրիկայի խնայած 58 տոննա բամբակից ստացվում է ավելի քան 370 հազար մետր գործվածք։ Այս թվերը օրինական հպարտություն են առաջ բերում մեզանից յուրաքանչյուրի մոտ։ Ինչքան լավ կլինի, որ մեր ամբողջ ֆաբրիկան սիստեմատիկ կերպով աշխատի խնայողաբար, խորացնի ձեռք բերած նվաճումները, որ մեր բոլոր բրիգադաները, բոլոր մանածագործները շարունակ կիրառեն խնայողության խստագույն ռեժիմ, տնտեսեն ամեն ինչ՝ հումք, օժանդակ նյութեր, էլեկտրաէներգիա։

Բայց ցավոք սրտի ես պետք է նշեմ, որ չնայած դրան, դեռ կան բրիգադաներ և առանձին բանվոր-բանվորուհիներ, որոնք աշխատում են ոչ ռիթմիկ, արտադրական առաջադրանքների թերակատարման հետ միաժամանակ, տալիս են նյութեղենի գերածախս։ Դա հետևանք է այն բանի, որ շատ բանվորուհիներ հոգ չեն տանում իրենց տեխնիկական գիտելիքների հարստացման

մասին, լրիվ կարողությամբ չեն օգտագործում սարքավորումները, լավ չեն տիրապետում գործի տեխնիկային։

Խնայողության ռեժիմի համար մղվող պայքարը կարճատև կամպանիա չէ, այն պահանջում է համառ և հետևողական աշխատանք։ Խնայողության ռեժիմի ամրապնդման հարցը մի անգամ ևս առաջ քաշեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիան։ Մեր խնդիրն է՝ արտադրության բոլոր օղակներում հասնել այն բանին, որպեսզի յուրաքանչյուր մանածագործ իր տեղում աշխատի խնայողաբար, երկրին արտապլանային կարգով տա ավելի շատ արտադրանք։

Դուք փորձով գիտեք, որ խնայողաբար աշխատելը մեծ չափով նպաստում է որակի բարձրացմանը։ Իսկ այդ գործում մենք դեռ ևս թերություններ ունենք։

Այնուհետև ագիտատորը բացահայտում է աշխատանքում գոյություն ունեցող թերությունները, նշելով, որ ցեխում որոշ աշխատողներ աշխատանքի ժամանակ լուրջ ուշադրություն չեն դարձնում թելի հավասար ոլորվածքին, ժամանակին չեն կանխում կտրվածքները։ Հետևանքը լինում է այն, որ մեր արտադրած մանվածքը երբեմն գործողներին



է հասնում տեխնոլոգիական թերություններով։ Ես պետք է ասեմ, որ մեր ցեխի առանձին ենթավարպետներ հանդես չեն գալիս արտադրության իսկական հրամանատարի դերում, սարքավորումները չեն պահում գերազանց վիճակում։ Պարզ է, որ այս ամենը նպաստում են կորուստների ավելացմանը և խոսք լինել չի կարող խնայողության մասին։

— Դուք գիտեք, որ ի պատասխան ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում Սովետական կառավարության ղեկավար ընկեր Մալենկովի արտասանած ծրագրային ճառի, ֆաբրիկայի կոլեկտիվը սոցիալիստական մրցություն է ծավալել արտադրանքի որակի բարձրացման և ֆաբրիկան գերազանց որակի ֆաբրիկա դարձնելու համար։

Այս ուղղությամբ մղած պայքարը արդեն տվել է որոշ արդյունքներ։ Առաջին տեսակի արտադրանքը պլանով նախատեսված 96-ի փոխարեն ֆաբրիկայում հասցված է 97,2 տոկոսի։

— Միթե՞ դուք գտնում եք, որ այս ուղղությամբ մեր կատարած աշխատանքը բավարար է,— հարցնում է ագիտատորը։

— Իհարկե ոչ, ինչ խոսք այդ մասին,— պատասխանում են տեղերից։

— Անցյալ զրույցներից դուք արդեն ծանոթ եք, թե պարտիան և կառավարությունը ինչ լուրջ և պատասխանատու խնդիրներ են դրել թեթև արդյունաբերության և մասնավորապես տեքստիլ արդյունաբերության աշխատողների առջև։ Շատ ամոթ է մեզ, թեթև արդյունաբերության աշխատողներիս, որ սովետական գնորդը հաճախ չի հավանում մեր արտադրանքը, որովհետև այն գեղեցիկ չէ և հաճախ անորակ։ Լավորակ, գեղեցիկ և ամուր հագուստ պատրաստելու համար, անհրաժեշտ է բարձրորակ, միայն գերազանց որակի մանվածք։ Ինչ կարող են անել գործողները, եթե մենք նրանց հրամցնում ենք անորակ, երբեմն նույնիսկ թույլ ոլորված, կամ խոտան մանվածք։ Պարզ է, որ մենք մեր գործողներին դնում ենք անհարմար վիճակի մեջ։ Մեզ մոտ կան բոլոր հնարավորությունները ջուլհակներին տալու բարձրորակ թել, որպեսզի վերջիններս կարողանան ժողովրդին տալ լավագույն գործվածք։ Մենք պարտավոր ենք այդ անելու, դրա համար կան անհրաժեշտ պայմաններ՝ հայրենական առաջնակարգ տեխնիկա, հումք և որ կարևորն է՝ անհրաժեշտ բարձրորակ կադրեր։



— Ընկերներ, վերջացնենք մեր այսօրվա զրույցը։ Ես կարծում եմ, որ մեր ցեխի կոլեկտիվը պատվով կկատարի իր առջև դրված կարևորագույն խնդիրները՝ կկիրառի խնայողության խստագույն ռեժիմ, կբարձրացնի արտադրանքի որակը և միաժամանակ կիջեցնի արտադրանքի ինքնարժեքը։

Օրվա ագիտացիոն զրույցից գոհ մնացին ունկնդիրները, որոնք պատրաստակամություն հայտնեցին կատարել բոլոր այն խնդիրները, որ իրենց առջև կդնեն հարազատ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը։

ԱԲ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

---

## ՀՈՅԱԿԱՊ ԿԱՌՈՒՑՈՒՄՆԵՐ

*Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում այսօր եռում է խաղաղ ստեղծարար աշխատանքը:*

*Ամենուրեք՝ Լեհաստանում, Չեխոսլովակիայում, Հունգարիայում, Ռումինիայում, Բուլղարիայում, Ալբանիայում կառուցվում են հարյուրավոր խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, պատրաստվում են երկաթուղային և խճուղային նոր ճանապարհներ, կառուցվում են նավարկելի և ոռոգիչ ջրանցքներ, կուլտուրայի հիանալի պալատներ: Այդ վիթխարի աշխատանքների իրագործումը հնարավոր է դարձել մեծ Սովետական Միության կողմից գլխավորվող խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի պետությունների էկոնոմիկական սերտ համագործակցության և փոխադարձ օգնության շնորհիվ:*

***

Վագի կասկադը: *Հիդրոէլեկտրակայանների մի շղթա Վագ գետի վրա, որոնցից վեցն արդեն աշխատում է, իսկ չորսը՝ կառուց-*



*վում— սրանք են այդ վիթխարի կասկադի օղակները: Բացի դրանից, այդ հսկայական հիդրոէներգետիկ սիստեմի մեջ են մտնում Վագի վտակ Օրավա գետի վրա կառուցվող էլեկտրակայանները և ջրամբարները:*

*Վագը Սլովակիայի ամենամեծ և հիդրոէներգիայի պաշարներով ամենահարուստ գետն է, չհաշված, իհարկե, Դանուբը: Բայց մինչև վերջին ժամանակներս այդ լեռնային արագահոս գետը իր սրընթաց հոսանքով մարդկանց բերում էր միայն աղետներ ու քայքայում: Սլովակիայի աշխատավորները դարերով երազում էին հնազանդեցնել Վագը, բայց այդ հսկայական խնդիրը կարողացավ լուծել միայն նոր, ժողովրդա-դեմոկրատական Չեխոսլովակիան:*

*Ներկայումս կառուցողները հաջողությամբ կենսագործում են սովետական ինժեներների օգնությամբ չեխոսլովակիան մասնագետների մշակած Վագի կասկադի ստեղծման պլանը: Հիդրոտեխնիկական աշխատանքների գլխավոր շրջանը Վագի միջին հոսանքն է, որտեղ արդեն շահագործման է հանձնվել մեկ հիդրոէլեկտրակայան Կոստոլնա գյուղում: Հիդրոէլեկտրակայանն իր առաջին հոսանքը տվեց անցած տարվա աշնանը, իսկ այժմ նա հնարավորություն է տալիս երկրի*

ժողովրդական տնտեսության համար տարեկան տնտեսել հարյուր հազարավոր տոննա ածուխ։ Դրանից ոչ հեռու ավարտվում է Գորնեյ Ստրեգեի և Նովե Մեստոյի հիդրոէլեկտրակայանների կառուցումը, որոնք իրարից բաժանված են ընդամենը 14 կիլոմետրով։

Բուռն թափով աշխատանքներ է ծավալվել Նոսիցե գյուղում, որտեղ կառուցվում է հռչակավոր «Երիտասարդության ամբարտակը» և Վագի կասկադի մյուս շինմասերում։

Շուտով պետք է ավարտվի Վագի բոլոր հիդրոէլեկտրակայանների կառուցումը։ Դրանից հետո Սլովակիայում էլեկտրաէներգիայի արտադրությունը կավելանա 13 անգամ՝ նախապատերազմյան ժամանակվա համեմատությամբ։ Այսպիսով հզոր էներգետիկ բազա կստեղծվի սլովակյան երիտասարդ, արագորեն աճող ինդուստրիայի համար։

Դրա հետ միասին Վագի կասկադը լուծում է նաև ժողովրդա-տնտեսական այլ խնդիրներ։ Ներկայումս Վագը նավարկելի է իր ստորին հոսանքի միայն մի փոքրիկ մասում։ Հիդրոկառուցվածքները գետային նավերի համար ճանապարհ կբացեն նաև դեպի միջին Վագ։ Բետոնապատ ջրանցքը, որ



արագորեն կառուցում են չեխոսլովակյան շինարարները, անգամ Դանուբի խոշոր նավերին հնարավորություն կտա երթևեկել մինչև Ժիլինա քաղաքը։ Ժիլինան կդառնա Սլովակիայի կարևոր գետային նավահանգիստ։ Այստեղ նավեր կերթևեկեն Բուդապեշտից, Գալացայից, Ջերնովոդայից և դանուբյան, ինչպես նաև սևծովյան այլ նավահանգիստներից։

***

**Ստալինվարոշ**։ Նոր Հունգարիայի այդ խոշորագույն նորակառույցը ձգված է Դանուբի աջ ափին, Բուդապեշտից մոտավորապես յոթանասուն կիլոմետր դեպի հարավ։

Երիտասարդ սոցիալիստական Ստալինվարոշ քաղաքը, որ այժմ ծնունդ է առել մերձդանուբյան Դունապենտելե գյուղակի տեղում, կբռնի 700 հեկտար տարածություն։ Շինարարների բազմահազար բանակը այստեղ կկառուցի վիթխարի մետալուրգիական կոմբինատ՝ 700 խորանարդ մետր տարողությամբ դոմնաներ, պողպատաձուլական հնոցներ, գլանման ցեխեր, կոքսաքիմիական գործարան, հարստացուցիչ փաբրիկա, էլեկտրակայան և այլն։

Դանուբի կոմբինատը, որին հունգարական ժողովուրդը շնորհել է Ի. Վ. Ստալինի անունը, ռեսպուբլիկայի չուգունի արտադրությունը կբարձրացնի մոտավորապես չորս անգամ, պողպատինը՝ երկու անգամ։ Բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող պողպատի արտադրությամբ Հունգարիան մոտակա տարիներին կգերազանցի այնպիսի երկրների ներկայիս մակարդակը, ինչպիսիք են Ֆրանսիան, Իտալիան և Շվեդիան։

Հունգարիայի ամբողջ պատմության ընթացքում դեռ երբեք այդքան խոշոր ձեռնարկություններ չէին կառուցվել երկրում։

Կոմբինատի կառուցման համար ընտրված վայրը ունի էկոնոմիկական մեծ առավելություններ։ Այստեղ երկաթահանքը կստացվի Դանուբի վրայով, գլխավորապես, Սովետական Միությունից։ Կոմբինատը ածխով կապահովեն Կոմլոյի ածխահանքերը, որոնք գտնվում են կոմբինատին մոտիկ, Պեչի քարածխային ավազանի կենտրոնում։ Դանուբը ջուր կտա կոմբինատին, որը անհրաժեշտ է նրան մեծ քանակությամբ։ Կոմբինատից ոչ հեռու գտնվում է մետաղի գլխավոր սպառողներից մեկը՝ Բուդապեշտը իր զարգացած մեքենաշինական արդյունաբերությամբ։



⁂

**Նոր ճանապարհ դեպի ծովը.** Ռումինական բազմահազար կառուցողներ աշխատում են Ռումինիայի ամենախոշոր նորակառույցներից մեկի՝ Դանուբ—Սև ծով ապագա ջրանցքի տրասսայի վրա։ Կյանքի մագիստրալը՝ այսպես է անվանել ռումինական ժողովուրդը կառուցվող ջրանցքը, դրանով իսկ ընդգծելով նրա հսկայական նշանակությունը երկրի ժողովրդական տնտեսության համար։

Դանուբի Չերնովոդի նավահանգստից սկսած մինչև Սև ծովի Միդիյա ծովախորշը ջրանցքը կկտրի-կանցնի ռումինական ամբողջ Դոբրուջայով։ Յոթ անգամ նա կկրճատի Չերնովոդից մինչև սևծովյան Կոստանցիա նավահանգիստն ընկած ջրային ճանապարհը։ Նա կապահովի Դանուբի վրա նորմալ նավագնացությունը՝ ամբողջ տարվա ընթացքում, կհեշտացնի և կէժանացնի փոխադրումները։

Բացի դրանից Դանուբ — Սև ծով ջրանցքը մեծ նշանակություն կունենա Ռումինիայի հարավ-արևելքի ինդուստրացման համար, տնտեսապես հետամնաց Դոբրուջան ծաղկուն, արգասաբեր երկրամաս դարձնելու համար։ Ջրանցքի տրասսայի երկարությամբ,

72 կիլոմետրի վրա, կառուցվում են չորս մեծ քաղաքներ, ընդորում Պորտա-Ալբայում և Նովոդարևում արդեն բարձրացել են առաջին թաղամասերը։

Դոբրուջայում, որը խիստ տուժում է երաշտից, ստեղծվում են նոր հնարավորություններ հողերի ոռոգման, գյուղատնտեսության բարելավման և աշխատավոր գյուղացիության կենսամակարդակի բարձրացման համար։ Մեծ աշխատանք է տարվելու ճահիճների չորացման ուղղությամբ, որոնք մալարիայի օջախ են հանդիսանում։ Արդեն անցած տարվա ամռանը չորացվեց ավելի քան հարյուր քառակուսի կիլոմետր ճահիճ։

Սովետական մասնագետները օգնեցին ջրանցքի գլխավոր նախագիծը կազմելու գործին։ ՍՍՌՄ-ից ստացված ժամանակակից հզոր տեխնիկան հնարավորություն տվեց կառուցողներին անընդհատ բարձրացնելու աշխատանքի տեմպերը, կրճատելու սահմանված ժամկետները։ Ջրանցքի տրասայում կառուցվել են մի քանի էլեկտրակայաններ, այդ թվում՝ Օվիդիուի II հզոր ջերմաէլեկտրակայանը։ Այդ ջերմաէլեկտրակայանի կառուցումը հնարավորություն տվեց է՛լ ա-



վելի լայնորեն մեքենայացնել ջրանցքի շինարարության աշխատատար պրոցեսները։ Արդեն հեռու չէ այն ժամանակը, երբ լայն ջրանցքը կճեղքի-կանցնի Դոբրուջայի անբերրի դաշտերով։ Նրա երկու ափերին կտարածվեն ավաններն ու այգիները։ Կծաղկի, արգասաբեր կդառնա Դոբրուջայի չոր տափաստանը։

Ի. ԼԱՊՈՆՈԳՈՎ



Խմբագրի տեղակալ՝ Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

ՎՖ 03998 Պատվեր № 801 Տիրաժ 9100

Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1953 թ.։